## Սերպ եւ Իտալական վէճը

Սերպ կառավարութիւնը պատասխանեց վերջին դէպքերու առթիւ, Իտալիոյ տուած ծանուցագիրներուն։

Պելկրատի կառավարութիւնը իր ցաւը կը յայտնէ եւ կը հաւաստէ թէ կառավարութիւնը ինքն իսկ անակնկալի եկաւ վերջին խռովութիւններէն, որոնց կարեւորութիւնն ալ բացայայտօրէն չափազանցուեցաւ։ Ասոր հետ մէկտեղ, եուկոսլաւ իշխանութիւնները իրենց կարելին ըրին ցոյցերուն առաջքն առնելու համար եւ մինչեւ իսկ ոստիկանութիւնը զէնքի դիմեց։

Ներքին Նախարարութիւնը անմիջապէս կտրուկ հրամաններ տուաւ, որպէսզի ցոյցի եւ գրգռութեան ամէն նոր փորձ խստօրէն պատժուի։ Իսկ արտաքին Նախարարը իր կողմէն քննութիւն բացաւ գնահատելու համար նիւթական վնասները։ Իտալիոյ հպատակները վնասուց հատուցում պիտի ստանան։

Վերջացնելով, սերպ կառավարութիւնը յոյս կը յայտնէ թէ այս ցաւալի դէպքերը չպիտի վրդովեն երկու պետութիւններու բարեկամական յարաբերութիւնները։

Իտալական «Սթէֆանի» գործակալութիւնը կը հաղորդէ մամուլին.—

Օտար մէկ քանի թերթեր եւ գործակալութիւններ կը շարունակեն լուրեր տարածել Զարայի, Վենետիկի Միլանի վերջին միջադէպերուն մասին, եւ մինչեւ իսկ կը յայտնեն թէ ցոյցերու ընթացքին եուկոսլաւ դրօշը եւ Աղեքսանդր թագաւորը անարգուած են ցուցարարներուն կողմէ։

Այս լուրերը, որոնց դիտումնաւոր նպատակը բացայայտ է, բոլորովին սուտ են։

## Չինաստանի կացութիւնը

Փեքինէն հասած ստոյգ լուրերու համաձայն, մարաջախտ Չանկ-Ցօ-Լին վերջնապէս վճռած է հրաժարիլ իշխանութենէ։ Այս որոշումին յայտարարութիւնը պաշտօնապէս պիտի ծանուցուի շուտով։ Միւս կողմէ, ազգայնական պետերը կը ջանան կառավարական մարմին մը կազմել, իրենց գլուխն ունենալով Թուան-Քի-Ճուին, որ ժամանակաւոր կառավարութեան գործադիր մարմինին պետն է եղած։

Իսկ Չանկ-Ցօ Լին օտար դիւանագիտական ներկայացուցիչները հրաւիրելով յայտարարեց թէ՝ իր միակ նպատակը եղած է միշտ պայքարիլ համայնավարութեան դէմ, զոր կը նկատէ Չինաստանի համար վտանգ մը, թէ ամէն միջոց ձեռք պիտի առնէ պաշտպանելու համար օտարականները՝ Թիէնցինի եւ Փեքինի մէջ, այն պարագային որ զինուորական գործողութիւններ տեղի ունենան այդ քաղաքներուն մէջ։ Նոյնը պիտի ընէ նաեւ Մանչուրիոյ համար։

Իր մեկնումէն յետոյ գործերը վարելու համար, Չանկ-Ցօ Լին նշանակած է յանձնախումբ մը, որ հակառակ ժողովուրդին փափաքին, կազմուած չէ հակառակորդներու վստահութիւնը վայելող անձերէ։

## Ով պիտի կազմէ գերմանական նոր դահլիճը

Գերմանիոյ Նախագահը իր մօտ հրաւիրեց Երեսփ. Ժողովի Նախագահը, որուն հետ խորհրդակցեցաւ քաղաքական կացութեան մասին, ինչպէս գրած էինք երէկ։

Այս տեսակցութեան մասին որ եւ է տեղեկագիր չհրատարակուեցաւ, բայց կէս-պաշտօնական ծանուցագիր մը կը յայտնէ թէ Հանրապետութեան Նախագահը նոր դահլիճի կազմութեան մասին որ եւ է ձեռնարկ չպիտի ընէ, ներկայ կառավարութեան հրաժարումէն առաջ։ Հաւանական է որ Մարքսի դահլիճը հրաժարի Երեսփ. Ժողովին բացման օրը, 13 Յունիս։

Այս խորհրդակցութեան ընթացքին, Երեսփ. Ժողովի Նախագահը՝ մարաջախտ Հինտէնպուրկի ուշադրութիւնը հրաւիրած է խառն դահլիճ մը կազմելու կարելիութեան մասին, ռամկավարներու, կեդրոնականներու եւ ընկերվարականներու, ինչպէս նաեւ պավարիացի ժողովրդական կամ գիւղական կուսակցութիւններէն մէկուն կամ միւսին մասնակցութեամբ։

## Անգլիա եւ բոլշեւիկ գործակալները

Անգլիոյ համայնավար կուսակցութեան նիւթական աղբիւրներու մասին կառավարութիւնը քննութիւն մը բացած էր։ Արդիւնքը յառաջիկայ Երեքշաբթի օր, Երեսփ. Ժողովին պիտի հաղորդուի Ներքին Նախարարին կողմէ։

Փաստերը որ կառավարութիւնը հաւաքած է սովետական առեւտրական կազմակերպութիւններուն դէմ, անհերքելի են։ Կառավարութիւնը կրցած է քայլ առ քայլ հետեւիլ վճարումի բոլոր գործողութիւններուն, եւ գլխաւորաբար Ռուսերը իրենք են որ բրիտանական կառավարութեան յանձնած են ամէնէն ցայտուն ապացոյցները։

Երբ ոստիկանութիւնը քանի մը ամիս առաջ Իրլանտացիներ ձերբակալեց զէնք եւ պայթուցիկներ կրելու մեղադրանքով, անոնց վրայ գտաւ դրամաթուղթեր, որոնք Լոնտոնի ռուսական մէկ դրամատունէն գանձուած էին։ Դրամատունը ուրացաւ սակայն եւ հաստատելու համար թէ ամբաստանեալներուն հետ որ եւ է կապ չունէր, թոյլ տուաւ որ իր տետրակները քննուին ոստիկանութեան կողմէ։ Դրամատունը չէր գիտեր սակայն թէ ոստիկանութիւնը ձեռք անցուցած է մասնաւոր բանալի մը, որով կրնար կարդալ իր հաշուետետրերուն գաղտնի արձանագրութիւնները։ Այս կերպով էր որ Մոսկուայի գործակալները ինկան թակարդի մէջ։

Ոստիկանութիւնը կրցաւ այս կերպով ծանօթանալ բոլոր այն անուններուն, որոնց միջոցով, Անգլիոյ համայնավարները կը ստանային Մոսկուայի դրամական օժանդակութիւնները, եւ երեւան ելաւ որ, հասարակ գործաւորներ որոնք հազիւ օրապահիկ մը կը ճարեն, դրամատան մէջ ունէին 15,000 ոսկիի (1,860,000 ֆր.) հաշիւ մը։ Այս դրամները յատկացուած էին Անգլիոյ մէջ համայնավարութիւնը զարգացնելու եւ գրգռութիւններ խմորելու։

Երեքշաբթիի զեկոյցէն յետոյ, կը կարծուի թէ բրիտանական կառավարութիւնը չպիտի վարանի երկրէն արտաքսել բոլշեւիկեան բոլոր գործակալները՝ ինչ անուն եւ տիտղոս ալ կրեն անոնք։

### ԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՊԵՏՈՒԹԻՒՆԸ Պանք տը Ֆրանսի ունեցած իր պարտքի հաշուոյն 900 միլիոն ֆրանք վճարեց այս շաբթու։ Դեռ պարտք կը մնայ 21 միլիառ 700 միլիոն ֆրանք։

ՍՊԱՆԻԱՅԻ օդանաւորդներ Եիմէնէզ եւ Իկլէզիա Սէվիլլայէն Նասիրիյէ գացին՝ 5800 քիլոմեթրը կտրելով մէկ անգամէն։

ԱՖՂԱՆԻՍՏԱՆԻ Թագաւորը Պոլսէն Պաթում մեկնեցաւ, ընկերակցութեամբ ռուս նաւատորմին։

---



---

## Հ. Յ. Դ.

Սէն Միշէլի «Քրիստափոր» խումբը Ստիպողական ժողովի կը հրաւիրուի վաղը Երկուշաբթի 4 Յունիս ժամը 9ին, ծանօթ հաւաքատեղին։ Կարեւոր Օրակարգ։

Լիոնի Դժոխք խումբի զաւառական ժողովը՝ վաղը իրիկուն ժամը 8.30ին, Հ.Յ.Դ. Գրադարանի սրահին մէջ։ Դասախօս Ընկ. Վ. Զուլլէրեան։ Նիւթ՝ Հ. Յ. Դաշնակցութիւն ծրագրի տնտեսական բաժինը։ Կը հրաւիրուին ընկերներ, համակիրներ եւ պատանիները։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. TEURNIER

— Մէսթորինօ չպիտի գլխատուի: Խոշոր աչքերով իր Լիլին այլ եւս չպիտի տեսնէ զինքը: Թիարանի կիզիչ արեւին տակ անոր վրայ պիտի մտածէք...: Այլ եւս չպիտի տեսնէք ձեր պաշտելի կինը: Աջա՛ քաւութիւնը:Պարոնայք երդուեալնե՛ր,մի՛ սպաննէք ձերկարգին: կառափնատ մի՛ ղրկէք անցեալը մաքուր այս մարդը. աչքովս չտեսնեմ այդ բանը: Լսեցէ՛ք սրտիս կոչը: Հանրային կարծիքէն վեր, տուէ՛ք արդար վճիռ մը՝ արժանի քաղաքակիրթ մարդոց:

*Նախագահը Մէսթորինոյի հարցուց թէ ուրիշ ըսելիք ունի՞:*

*— «Գթութի՛ւն», մրմռաց ոճրագործը, մինչ ներկաներէն մէկը պոռաց. «Թրիւֆէմի պէս»:*

*Մինչ երդուեալ դատաւորները խորհրդակցութեան համար քաշուած էին, վկաներու սրահին մէջ անձնասպանութիւն փորձեց Տիկին Մէսթորինօ՝ կարտընալ կլլելով: Տիկինը պատգարակով փոխադրուեցաւ Օթէլ-Տիէօ հիւանդանոցը, ուր բժշկական քննութիւնը հաստատեց թէ կեանքի վտանգ չկայ եւ քանի մը օրէն կ՚աղէկնայ:*

*Երդուեալները հաստատական պատասխան տուին աւանդական չորս հարցումներուն, աւելցնելով որ «մեղմացուցիչ պարագաներ» կան: Դատարանը ցկեանս տաժանակիր աշխատանքի դատապարտեց Մէսթորինոն:Ասկէ զատ Թրիւֆէմի այրին պիտի ստանայ 100,000 ֆրանք, հայրն ու մայրը իւրաքանչիւրը 20,000ական ֆրանք, իսկ գոհարավաճառներ Տիկին վան Սէվէրէն եւ Սէօսթէր պիտի ստանան իրենց գողցուած գոհարներն ու մուրհակը:*

*Նկատելով որ Մէսթորինոն սնանկացած է, Տիկին Թրիւֆէմի փաստաբանը յայտարարեց.*

— կո՛չ կ՚ուղղեմ այն քսան վկաներուն, որոնք երաշխաւոր եղան Մէսթորինոյի պարկեշտութեան: Ձեր բարեկամը նուիրական պարտամուրհակ մըստորագրած է այսկնոջ ծանդէպ:Մի՛ թողուք որ բողոք ըլլայ այդ մուրհակին համար: վ.ճարեցէ՛ք: Ջեռքերնիդ ձեր սրտին վրայ դնելէ յետոյ, դրէ՛ք նաեւ ձեր քսակին վրայ:

*Դատարանի վճիռը ընդհանուր դժգոհութիւն առաջ բերած է քաղքենի մամուլին մէջ, որ մահապատիժ կը սպասէր: Միայն ընկերվարական մամուլն է որ գոհ է:*

## ՍԻՒԶԱՆ ՇԱՐՆՕ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾ

*Դատարանը փակուելէ վերջ, Մէսթորինոյի քենին Օր. Սիւզան Շարնօ «Թաքսի»ով մը մեկնեցաւ: Երկու գաղտնի ոստիկաններ ինքնաշարժով հետեւեցան իրեն եւ Քոմէտի Ֆրանսէզի առջեւ կեցուցին կառքը. Սիւզան արցունքներու մէջ փոխադրուեցաւ ոստիկանական կառքը. տասը վայրկեան վերջ արգելափակուած էր արդէն: Ձերբակալման հրամանագիրը տրուեցաւ Ուրբաթ օր խորհրդակցական մեծ ժողովի մը մէջ, ուր որոշուեցաւ հանգիստ ձգել Մէսթորինոյի աշխատաւորները, որոնք սուտ խօսած էին: Պիտի հետապնդուին միայն Սիւզան, իբրեւ դիակ եւ գողօն պահող, ինչպէս նաեւ գոհարավաճառներ Փաշոլսքի եւ կառնիէ, որոնք աժան գինով գնած էին գողցուած գոհարեղէնները: Չպիտի հետապնդուի նաեւ Վարէնի կառատան տէրը Փազէն:*

*.˙. Կ՚ըսուի թէ երդուեալ դատաւորներէն չորսը համամիտ էին մահապատիժ տալու Մէսթորինոյի: «Փարի-Միտի»ի համաձայն, հազար հոգիի ստորագրութեամբ խնդրագիր մը կը պատրաստուի՝ մահապատիժ պահանջելու համար ոճրագործ գոհարավաճառին:*

## Կացութիւնը Փեքինի մէջ

*Ազգայնականներու կողմէ Փեքինի գրաւումը կատարուած իրողութիւն է այլեւս: Հիւսիսայիններու վերջին զինուորներն ալ, որ կարգապահութեան կը հսկէին, մեկնեցան Փեքինէն եւ անոնց տեղ եկան Շանզիի զինուորներէն զօրաբաժին մը: Ներկայիս Փեքինի մէջ ամէն կողմ ազգայնական դրօշակներ կը ծածանին— կապոյտի վրայ ճերմակ արեւ: Փեքինի բնակչութիւնը 1911էն ի վեր ա՛յնքան փոփոխութիւններ տեսած է, որ այլեւս փիլիսոփայ դարձած է ու անտարբերութեամբ կ՚ընդունի յաղթականը. միայն ուսանողներ են որ խանդավառ ցոյցեր կ՚ընեն:*

## Օդանաւային լուրեր

*«Իտալիա» ղեկաւոր օդապարիկին մասին զանազան անթելներ կը հասնին տարբեր աղբիւրներէ, սակայն մինչեւ հիմա կարելի չէ եղած հաստատել թէ ո՞ւր կը գտնուի եւ ի՞նչ վիճակի մէջ են բեւեռախոյզները:*

*Վերջին անգամ «Ջիթթա-տի-Միլանօ» շոգենաւը կարգ մը նշաններ ստացած է «Իտալիա»յէն, որ կ՚ըսէ թէ մէջինները ողջ առողջ են: Նորվեկիացի օդանաւորդ Ռիզըր Լարզէն խուզարկութիւններ կը կատարէ:*

*Փէնսիլվանիոյ մէջ անթելի սիրող մը ստացած է տեղեկութիւն մը «Իտալիա»յէն, որուն համաձայն բեւեռախոյզ օդապարիկը լեռան մը զարնուելով ջախջախուած է: Մէջինները օդապարիկին բեկորներէն զատ ապաստանելիք գոյք չունին: Իրենց դիրքն է Հիւսիսի 84 o 15' 6" եւ Արեւելքի 15o 20': Բոլորը ողջ են, բայց քանի մը հոգի վիրաւորուած է: Ուտելիք կ՚ուզեն:*

*Վերջին տեղեկութեանց համաձայն, այժմ անթելով կանոնաւոր հաղորդակցութիւն սկսած է «Իտալիա»յի եւ «Ջիթթա տի Միլանօ»ի միջեւ:*

*.˙. Ամերիկեան «Հարաւային Խաչ» օդանաւը, որ Սան-Ֆրանչիսքոյէն Հօնոլուլու եւ յետոյ Ֆիճի կղզիները գացած էր, յաջողութեամբ աւարտեց նաեւ երրորդ հանգրուանը՝ հասնելով Աւստրալիա:*

*.˙. Ամերիկացի օդանաւորդներ Ուիլքինս եւ Այէլսըն, որոնք Ալասքա—Շփիցպէրկ թռիչքի ընթացքին Հիւսիսային Բեւեռին վրայէն անցած էին, Եւրոպայի կարգ մը մայրաքաղաքները այցելելէ յետոյ հասան Փարիզ, ուր խանդավառ ընդունելութեան կ՚արժանանան:*

*.˙. Երկու յոյն օդանաւորդներ՝ Փափատաքոս եւ Ատամիտէս Աթէնքէն ճամբայ ելան՝ Միջերկրականի շուրջ թռիչք մը կատարելու համար: Օդանաւորդները պիտի հանդիպին Հալէպ, Աղեքսանդրիա, Տրիպոլիս, Ալժէր, Քազապլանքա, Փարիզ եւ Հռոմ:*

*.˙. Գերման կառավարութիւնը օդանաւ մը նուիրեց Աֆղանիստանի Թագաւորին: Այս օդանաւը, ինչպէս նաեւ ուրիշ երկու Եունքէրս օդանաւեր, զորս Աֆղանները գնած են Գերմանիայէն, մօտ օրէն ճամբայ պիտի ելլեն դէպի Քապուլ:*



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: H. TEURNIER

